**1917** № 26—ՅՈՒԼԻՍԻ 9 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը. 10 կոպէկ



ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ Թիֆլիս, Արտաաքաղեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Պոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման։

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ՎՏԱՆԳԱՒՈՐ ՎԱՅՐԿԵԱՆ

Այն մեծ, զարմանալի և անսպասելի փոփոխութիւնը, որ տեղի ունեցաւ ցարիզմի դարաւոր շղթաներով կաշկանդուած պետութեան մէջ, այն պայծառ և ազատատենչ ձգտումը, որ հեղեղի նման վարարեց ռուս յետամնաց մուժիկէն մինչև վայրագ գարադավոյի հոգին, յանկարծակիի բերաւ ամբողջ աշխարհը։

Մարդիկ կարծեցին, որ ազատութեան և ընկերվարութեան լոյսը այսուհետև արեւելքէն պիտի գայ, որ քաղաքակրթութեան բարձրագոյն աստիճաններու վրայ հասած արեւմուտքի ազգերը պիտի կարմրին և ամօթահար գլուխնին ծռեն, որովհետև Ռուսաստանը՝ մարդկային բռնութիւններու այդ յետադէմ երկիրը, յանկարծ գլեց անցաւ գիրենք։

Եղան կարճատես ու միամիտ մարդիկ էլ, որոնք կարծեցին, որ Ռուսաստանի յեղափոխութիւնը պիտի ծառայի սահմանէն անդին, գերմանական արիւնարբու իմպերիալիզմը խորտակելու և ջախջախելու համար։

Իսկ ռուս յեղափոխութեան ներկայացուցիչը, որպէս զի մարդկային ազատութեան պատմութեան մէջ զարմանալի փաստ մը դնեն, ջանացին յեղափոխութիւնը խօսքով և ճառով ամրապնդել և թողուլ որ լայնածաւալ ժողովուրդը խօսքի ու ճառի ազատ մթնոլորտ մը ապրի։

Բայց պատմութիւնը թռիչք չի սիրեր և ժողովուրդներու ըմբռնողութիւնն ու տարակառոյց աւանդութիւնները յանկարծօրէն և ինքնիրեն չեն կարող յեղաշրջուել։

Ռուսաստանի պանծալի յեղափոխականները չը զգացին, որ իրենք պատերազմի մէջ կը գտնուին, որ գարհուրելի թշնամին, իր ժանիքները սրած պատրաստ կը սպասէ ճակատի վրայ, թափանցած է Ռուսաստանի սիրտը և գայլի աչքերով կը սպասէ յարմար վայրկեանի. անոնք չզգացին, որ ցարիզմը, բոլէապէս չքացող ու գոլորշիացող մի մարմին չէ. այլ դարերու գոյութիւն ունեցող մի յետադիմական, ահարկու զօրութիւն. անոնք մոռցան որ թշնամու լրտեսական թոյնը եթէ յեղափոխութենէն առաջ վարակած էր յետադէմներու և բիւրոկրատներու հոգին, յեղափոխութենէն յետոյ, նոյն սարսափելի թոյնը օրաւուր կը վարակէ ամենաձախ և ամենաարմատական վարագոյրներու տակ թաքնուած մարդկանց հոգին…

Անոնք մոռացան, որ հին գարադավոյն, ոգէտ մուժիկը, կաշառակեր պաշտօնեան և դժգոհ տարրեր դեռ կան, բազմաքանակ են և իրենց «ազատական» խօսքերով, թշնամու առատ ոսկիներով և փոխ առնուած «գաղափարական» ինտէրնացիօնալ սկզբունքներով ամեն վայրկեան կը պղտորեն մտքերը և կը պատրաստեն մի սարսափելի և կործանարար հակահարուած։

Ռուս ժողովուրդը եթէ ընդունակ եղաւ յանկարծ մէկ ծայրայեղութենէն միւս ծայրայեղութեան թռչելու, այդ ընդունակութիւնը կը նշանակէ մի արգասաւոր հող է մութ ոյժերու համար, մի նպաստաւոր նշան, ուրիշ ծայրայեղութիւններ առաջ

բերելու, հետևաբար պէտք է վախենալ և խիստ զգոյշ լինել։

Մասնաւորապէս մեզ հայերուս համար վճռական նշանակութիւն ունի Ռուսաստանի քաղաքական փոփոխութիւնը։

Հայու բաղդն և անոր ապագան ամենամեծ չափով կապուած է Ռուսաստանին և կախում ունի անոր քաղաքական երանգաւորումէն։

Յեղափոխական ներկայ կառավարութեան հիմնաւորումն ու զօրեղացումը Անդրկովկասի մէջ՝ կապահովէ հայ ժողովրդի ներկայ աննպաստ կացութիւնը։ Նա կարող է կռթնել միայն ռուս ներկայ յեղափոխական ոյժին և ազատ պահել ինքզինք ազգամիջեան վնասակար թիւրիմացութիւններէ և յարձակումներէ։

Հայ ժողովուրդը պէտք է ձեռք ձեռքի տայ հարևան ժողովուրդներուն՝ Կովկասի մէջ առաջ բերելու անդորրութիւն և զօրեղացնելու յեղափոխական կառավարութեան հիմքերը։

Տաճկահայերու գրութիւնը աւելի սոսկալի կը լինի, եթէ երբէք Ռուսաստանի ներկայ վարչական կազմը փոխուի, եթէ երբէք Կերենսկու և նման գործիչներու դէմ յաջողի Լենինական ոյժը և մեծամասնական տարրը։

Տաճիկ կառավարութիւնը այստեղ ռազմաճակատի վրայ, գերմանացիներու նման ակնդէտ կը սպասէ Ռուսաստանի յեղափոխութեան վիժման և քայքայման։ Անոնց նպատակն է ընկերվարական անուան տակ օգտագործել երկրի մութ ոյժերը և հակահարուած առաջ բերել, տապալել մեծ ճիգերով հազիւ ձեռք բերուած ներկայ կառավարութիւնը։

Հազարաւոր փաստեր հաստատեցին, որ գերմանական լըրտեսական կազմակերպութիւնը մի հսկայական ոյժ է, մի անյաղթելի ցանց, որ թերևս աւելի գործ է կատարած ներկայ պատերազմի մէջ, քան արիւնայեղ ճակատամարտները։

Լրտեսական այդ ցանցը աւելի հող և նպաստաւոր միջավայր ունի Կովկասի մէջ և բոցավառուելու աւելի հրանիւթ կայ այնտեղ։

Բրդական վերջին շարժումը պերճախօս մի ապացոյց է այդ իրողութեան։

Մեզ հայերուս կը մնայ աչալուրջ ըլլալ թէ հոս Կովկասի մէջ և թէ հոն Հայաստանի մէջ։

Ռուսաստանի ներկայ ճգնաժամը ուրիշ բան չի թելադրեր մեզ, քան համազգային միութիւն, համազգային սերտ և կուռ կազմակերպութիւն։

Այդ իդէալին բացակայութիւնն է, որ կործաներ է Ռուսաստանին և կը կործանէ այսօր. ներքին պառակտիչ օձն է. որ փաթաթուեր է հսկայ պետութեան վզին և կաշխատէ խեղդել զայն թէ ներքնապէս և թէ արտաքնապէս։

Իսկ մեզ նման փոքր, անտէր, ամեն կողմէ գիշատիչ ոյժերով շրջապատուած ժողովուրդի մը համար, որքան վճռական նշանակութիւն ունի անհատուածական և անբաժանական միութիւն։

Ֆրանսիան, յեղափոխութեան և հրդեհի այդ դասական աշխարհը, իր ներքին կուռ միաբանութեամբ թող օրինակ լինի մեզ։

Դրութիւնը շատ լուրջ է, մթնոլորտը յղի ամեն տեսակ անակնկալներով. հարկաւոր է զգոյշ ըլլալ և դիմագրաւել վտանգը։

Ծ. Թորգոմեան

# ՓՈՔՐ ԱԶԳԵՐԻ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԻՒՆԸ

Վերջերս Անդրկովկասում ապրող ազգերի մէջ մի խուլ և վնասակար պայքար է ստեղծուել Անդրկովկասի ապագայ վարչակազմին շուրջ։

Դեռ նոր էր որ վերջացաւ գիւղացիական համագումարը, որի մէջ, կուսակցական պատնէշների ներքև, ազգամիջեան հակամարտութիւնն էր, որ երևան եկաւ, որտեղ արևի լոյսի նման պարզ երևաց, որ ամենածայրայեղ սոցիալիստներն անգամ տոգորուած են ազգային իդէալներով ու ձգտումներով։

Ռուսական ներկայ յեղափոխութիւնը ազատ ասպարէզ բացաւ մանր ազգերի առջև. այն ժողովուրդները, որոնք ցարիզմի օրով ենթարկուած էին հալածանքի ու ամեն տեսակ կաշկանդումների, այժմ ազատ շունչ են քաշում և աշխատում են օգտուելով ներկայ նպաստաւոր պայմաններից, հասարակական ու քաղաքական ուժեղ պատուանդաններ շինել իրենց համար։ Ամեն ազգ այժմ ձգտում է կազմաւորել իր ներքին կազմալոյծ վիճակը և ձգտել բարելաւելու իր ներքին ու արտաքին գործերը։

Կովկասում ևս սկսուել է կենդանի աշխատանք մանր ազգերի ներքին քաղաքական և հասարակական կեանքում։ Թիւրքերի, թաթարների և լեռնական մահմեդական ցեղերի համիսլամական անուան տակ եղբայրացումն ամենացայտուն ապացոյցն է կազմում մանր և ճնշուած ժողովուրդների ներքին կազմակերպութեան։

Ուկրայնացիների, ֆինների ազգայնական շարժումները Ռուսաստանում արդէն կատարուած իրողութիւն է, ժամանակաւոր Կառավարութիւնը հաշտւում է մանր ժողովուրդների ինքնավարական ձգտումներին և ընդառաջ գնալով նրանց, աշխատում է բաւարարել։ Որքան որ այդ ազգայնական շարժումները չեն վնասում համայն Ռուսաստանի շահերին, որքան որ նրանք համապատասխանում են յեղափոխական կառավարութեան ընդգծած ազատական օրէնքներին, նոյնքան թոյլատրւում է ազգային ոևէ ինքնորոշում ու ազատագրում։

Անդրկովկասում ապրող ժողովուրդների քաղաքա-հասարակական պայմանները դժբաղդաբար տարբեր կերպով են դասաւորուած։ Թիւրքեր, հայեր ու վրացիներ այնպէս խառն ապրում են իրար հետ, որ չի կարող նրանցից ոևէ մէկը ինքնորոշումն ստանալ առանց վնասելու միւս ժողովրդի ազգային շահերին։ Անդրկովկասեան ազգաբնակութեան երջանկութիւնն ու բարօրութիւնը պայմանաւորուած է ոչ թէ այդ ազգաբնակութիւնը կազմաւորող փոքր ժողովուրդների անհատական գործունէութեան և շարժման մէջ, այլ համայն ազգաբնակութեան կազմակերպման ու համերաշխ գործունէութեան մէջ։

Մի հայ կամ մի թիւրք ժողովուրդ եթէ երբէք ձգտի իր բուռի մէջ կենտրոնացնել Անդրկովկասի վարչական գործերը, այդ պարագային ապահովաբար և առանց այլևայլի նա կարող է բաղխել խոչընդոտի մի երրորդ ազգի կողմից, որ նոյնքան իրաւունք ունի հաւասար բաժինն ունենալու վարչակազմին մէջ։

Կամ պէտք է մանր ազգերի համերաշխ գործակցութեան վրայ դրուի Անդրկովկասեան վարչական շէնքը, որպէսզի նրա հիմերն լինեն ամուր և հաստատուն, կամ թէ պիտի ստեղծուի ազգամիջեան հակամարտութիւն, որը առաջնորդում է գործերի քայքայման ու կազմալուծման։

Եթէ երբէք վրացի սոցիալ-դեմոկրատները համերաշխում են թիւրք բէգերի և հողատէրերի հետ, ընդդէմ հայ և թիւրք աշխատաւորութեան, նշանակում է նրանց բոլոր ջանքերը Անդրկովկասի վարչական մեքենան շարժելու իրենց դասային շա

հերի համապատասխան, պիտի հանդիպի ուժեղ խոչընդոտի և պիտի վիժի։

Սա պարզ և անժխտելի իրողութիւն է, որի առջև չպէտք է աչք փակել, կուսակցական կրքերով կուրանալով։

Անդրկովկասեան բոլոր ժողովուրդները հաւասարապէս պէտք է վայելեն ռուսական ազատութեան բարիքները, հաւասարապէս նրանք պիտի աշխատեն այդ ազատութեան հիմնաւորման ու հաստատման։

Ազգամիջեան հակամարտութիւնը ոչ միայն վնասում է փոքր ազգերի, տարիներով իրար հետ եղբայրօրէն և սերտ կեր պով ապրող ժողովուրդների հարևանութեան ու համերաշխութեան գործին, ոչ միայն խոչընդոտ և արգելք է հանդիսանում կովկասեան գործերի կանոնաւոր առաջխաղացութեան, այլ և խոշոր հարուած պիտի տայ Ռուսաստանի ներկայ թանկագին ազատութեան՝ որ վեր է ամեն կրքից. ներքին, կուսակցական հակամարտութիւնից և այս կամ այն դասակարգի բռնակալական ախորժակներից։

Ազգերի հակամարտութիւնը վարագուրել դասակարգային պայքարով, կուսակցութիւնների տակտիկայի մէջ քօղարկել այս կամ այն ցեղի ձգտումները, կը նշանակէ երկիրը մատնել քաօսի և ազատութիւնն ու նրա բարիքները դատապարտել ոչնչացման։

Ինչ զարմանալի երևոյթ, երբ մի կողմ սոցիալիստ համարուած խմբակը համերաշխում է հողատէր դասակարգի հետ, ընդդէմ մի ուրիշ սոցիալիստական խմբակի, որի ծրագիրն ու գործելակերպը աւելի մօտ է նրա շահերին և աւելի հեռու հողատէրերի ու բէգերի ձգտումներից։

Այս երևոյթը ուրիշ բան ցոյց չի տալիս բան այն, որ սոցիալիստական և դասակարգային պայքարը չէ, որ մղւում է միզանում՝ այլ ազգային պայքարը, որ սոցիալիստները նոյնքան ազգային են իրենց գործելակերպով, որքան հայ բուրժուազիան, վրացի ազնուականութիւնը և թիւրք հողատիրութիւնը։

Եթէ վրացի աշխատաւորութիւնը համերաշխութեան ձեռք չի պարզում հայ և թիւրք աշխատաւորութեան, կը նշանակէ գոյութիւն չունի նա, կամ եթէ գոյութիւն ունի՝ ազգային ու դասակարգային որոշ ախորժակներ ունի։ Եթէ հայ աշխատաւորութիւնը միանայ վրաց ազնուականութեան հետ, կը նշանակէ նա որպէս դասակարգ գոյութիւն չունի և իր սկզբունքներն ու ընդգրկած գործելակերպը կեղծ հողի վրայ է դրուած։

Անդրկովկասում տեղի ունեցող երևոյթները ցոյց են տալիս որ ազգութիւններ են կանգնած իրար հանդէպ՝ քան դասակարգեր. ազգութիւններ՝ որոնք ծածկուած են այս կամ այն գաղափարի ու տակտիկայի վարագոյրին տակ։

Եւ քանի որ այդ երևոյթը պարզուեց բոլորի համար, մընում է միայն ազգերի համերաշխութեան մասին մտածել. իւրաքանչիւր ժողովուրդ պէտք է ինքն իր մէջ կազմակերպուի, կուռ և ամուր հիմեր դնի իր ոտների ներքև և իր ներքին կազմակերպութիւնը ի սպաս դնի ընդհանուր հայրենիքի բարօրութեան և կազմակերպութեան։

Անդրկովկասի վարչական գործը սեփականութիւն չը պէտք է դառնայ այս կամ այն ազգի, դասակարգի կամ կուսակցութեան, նա պէտք է լինի բոլոր մանր ժողովուրդների ձեռքում և վերջինների քանակական ու որակական հաւասար աշխատակցութեամբ առաջ տարուի այդ գործը։

Միայն մանր ազգերի համերաշխութեան և համագործակցութեան մէջ կարող է լինել բարօրութիւն և խաղաղութիւն։

Մանր ազգութիւնների համերաշխութիւնն պաշտպանելը պէտք է կազմի իւրաքանչիւր ղպաքացու առաջին մտահոգութիւնը։

Թորգոմ

# ԳՐԱԿԱՆ ԱԿՆԱՐԿՆԵՐ

## I

Առանձնապէս մեզ, հայերիս համար շատ ձեռնտու կը լինէր և շատ օգտաւէտ, եթէ մեզ շրջապատող օտար ցեղերը, մեզ հետ ապրող, մեզ հետ անընդհատ շփումն ունեցող բոլոր ազգերը լինէին ոչ միայն քաղաքակրթուած և կենսակրթութեան բարիքներովը օժտուած, այլ մինչև իսկ իրենց գիտակցութիւնովը և իմացականութեամբ բարձր կանգնած։

Ինձ այնպէս է թւում, որ բոլոր թիւրիմացութիւնները, գժտութիւններն ու պառակտումները, որոնք ծագում են այս և այն հարցի ժամանակ, շատ դիւրութեամբ և հաշտութեամբ կը լուծուէին ու կը ջնջուէին, եթէ մեզ հետ շփումն ունեցող բոլոր ցեղերը քաղաքակրթուած՝ ոչնչացրած լինէին իրենց յառաջդիմութիւնը կաշկանդող այս և այն՝ թէև «նուիրական», բայց յետամնացութեան մէջ բորբոսեցնող հասկացողութիւնները և աւանդութիւնները։

Եղել եմ ես այն բոլոր երկրներում և գլխաւոր վայրերը, ուր կենտրոնացած են և կամ շատ կան մեր դրացի մահմեդական ցեղերից—պարսիկներ, թաթարներ, քիւրդեր և այլն։ Եղել եմ և մեղնից շատերը, գիտեմ, ուսումնասիրել մահմեդական ժողովուրդի կեանքն ու բարքերը։ Թէ ուրիշները և թէ ես, միշտ և ամեն տեղ հանդիպել ենք մի տարօրէն երևոյթի մահմեդական ժողովրդի կեանքում, որի պատճառը բացատրել դժուարացել ենք։

Ինձ երբեմն թուել է, թէ իրենք—մահմեդականները, սովոր այդ երևոյթին, չեն էլ նկատում նրա տարօրինակութիւնը, յաճախ համարում են նոյն իսկ բնական և լաւ, իսկ աւելի զննող մտքերը վերագրում են միայն տգիտութեան և կամ այլ այնպիսի հանգամանքների, որոնք ոչ բացատրում են երևոյթի պատճառը և ոչ արդարացնում։

Բայց ահա այս օրերս պատահմամբ ձեռքս ընկաւ մի ռուսերէն գիրք. գրքի մէջ կարդացի մահմեդական մի հեղինակի մի ընտիր յօդուածը և այդ յօդուածի մէջ էր, որ պարզուեց ինձ համար իմ և շատերի գիտած տխուր երևոյթի պատճառները։

Գրքի անունն է «Թիւրքական Ժողովածու». հրատարակութիւնը թրքական է և թրքասէրների ջանքերով։ Յիշածս հեղինակն է Մահմէդ Շախթախթինսկի. ամբողջ տառերովստորագրած։ Յօդուածի վերնագիրն է—«Մահմեդական կինտունակութեան տագնապը»։

Ի՞նչ է սակայն այն երևոյթը, որ ինձ գոնէ յաճախ մտածել է տուել և զարմացրել, թէ Պարսկաստան եղածս օրին, թէ Թիւրքիայի գլխաւոր քաղաքներում և թէ այստեղ Կովկաս, երբ մահմեդական ազգաբնակութեան կեանքն ու բնակավայրը համեմատութեան մէջ եմ դրել՝ նրան կից և նրա հետ ապրող քրիստոնեայ ազգաբնակութեան կեանքի և բնակավայրի հետ։

Թող ինքը—թիւրք հեղինակը պարզի մեզ այդ երևոյթը իր յօդուածի հետևեալ կտորի միջոցով.—

«Հէյրութում—գրում է նա—ամբողջ ազգաբնակութիւնը արաբական է։ Քաղաքի մի մասում ապրում են մահմեդականներ, իսկ միւս մասում՝ քրիստոնեայ արաբներ։ Բէյրութի կառավարութիւնը թիւրքական է, որը, ինքնըստինքեան հասկանալի է, աւելի բարեացակամ է դէպի մահմեդականները։ Լեզուն և գրականութիւնը միևնոյնն է՝ թէ մահմեդական և թէ քրիստոնեայ արաբների համար։ Սակայն ինչ ենք տեսնում մենք։ Բէյրութի քրիստոնեայ-արաբների մօտ դուք ամեն տեղ կը հանդիպէք մաքրութեան, վայելուչ կեանքի, աշխատասիրութեան և կենսուրախութեան։ Իսկ

մահմեդական արաբները աղքատ են, աղտոտ, թմրած (апатичны) և զզւելապէս զգուած կեանքից»..

Բառացի՝ Մահմէդ Շախթախթինսկու յօդուածից։ Ահա հենց այդ տարօրինակ երևոյթն է, որ աչքի է խփում, երբ դուք մըտնում էք Պարսկաստան, Թիւրքիա կամ Կովկաս։ Չէ՞ որ Պարսկաստանում և Թիւրքիայում կառավարութիւնը մահմեդական լինելով, բնականօրէն շատ աւելի բարեացակամ է եղել միշտ դէպի մահմեդականները, քան օտարացեղ քրիստոնեաները։ Բայց ի՞նչ էք տեսնում դուք, օրինակ՝ Թէհրան և Թաւրիզ, Պոլիս և Պրուսա, ապա կամ Երևան ու Շուշի, Նուխի և Շամախի։ Նոյնիսկ գիւղերի մէջ սուր կերպով տարբերւում են մահմեդականների բնակավայրերը քրիստոնեաներից։ Ասենք Շախթախթինսկու խօսքով—և շատ ցաւելով, անկեղծօրէն վշտացած ենք ասում— որ այդ բոլոր վայրերում, մահմեդականութեան այդ բոլոր կենտրոններում, «քրիստոնեաների մօտ դուք կը հանդիպէք ամեն տեղ մաքրութիւն, վայելուչ բնակարաններ ու կենցաղ, աշխատասիրութիւն և կենսուրախութիւն», իսկ մահմեդականները՝ խղճալի նիստ ու կաց, «աղտոտ, թմրած և կեանքից զզւելապէս ձանձրացած»...

Այդ բանը աչքի է խփում մանաւանդ, երբ քրիստոնեաների բնակած մասերում հանդիպում էք լայն ու մաքուր փողոցների, մեծ և վայելուչ տների, լուսամուտների և պատշգամների՝ փողոցների վրայ, շարժուն կեանք փողոցներում՝ նոյնիսկ մթնելուց յետոյ, իսկ մահմեդականների բնակւած վայրերում փողոցները ծուռ ու մուռ, աղտոտ ու անմաքուր, տները կիսախարխուլ, ոչ մի լուսամուտ փողոցի վրայ (եղածներն էլ, Թիւրքիայում, ցանցապատ), փողոցները խուլ, ամայի և մթնելուն պէս լիովին կեանքը մեռած։ Իսկ մաքրութիւնը, այդ միակ էժանագին ձեռք բերուող յատկութիւնը, երբ մանաւանդ ջրերը առատօրէն հոսում են աղբիւրներից և առուակներից—կարծես բոլորովին գոյութիւն չունի նրանց թաղերի մէջ։

Այցելեցէք Թաւրիզի, Երևանի, Նուխու, թէկուզ հենց Պրուսայի և Պոլսի մահմեդական թաղերը և կը գտնէք Մահմէդ Շախթախթինսկու ասածները կէտ առ կէտ իրաւացի։

Եւ դա, որքան ճիշտ է, այնքան աւելի կսկծեցուցիչ է, այնքան աւելի վնասակար՝ մանաւանդ մեզ—հայերիս համար, որ կուզենայինք մեզ հետ միշտ շփումն ունեցող մահմեդական ցեղերին տեսնել քաղաքակրթւած, կուլտուրայի բարիքներովը օժտուած և ըստ ամենայնի պատրաստակամ՝ ընդունելու և գործադրելու այն ամենը, ինչ ներշնչում է զարգացողութեան, գիտակցութեան և յառաջդիմութեան ցանկութիւնները։

Բայց ինչն է ուրեմն պատճառը այդ տխուր յետամնացութեան, այդ դարևոր արձանացման մի ամբողջ ցեղի, որ յամառաբար սառել է մի կէտի վրայ, դարերից ի վեր յառաջդիմութեան մէջ մի քայլ անգամ չի ուզում դնել և իր բոլոր հասկացողութիւններովը ու կենցաղովը միջին դարերն է մշակում ու կամակորութեամբ պահպանում իր միջավայրում։

Մահմէդ Շախթախթինսկին ահա իր վերոյիշեալ յօդուածովը հենց այդ պատճառներն է, որ ուսումնասիրում է և իր կուռ գրչովը ու ջախջախիչ փաստերովը՝ ճգնում է իր հաւատակիցների գիտակցութիւնը բանալ՝ տխուր իրողութեան առաջ։ «Որովհետև—ասում է նա—յիրաւի, եթէ մահմեդական կենցաղի մէջ տեղի չունենայ արմատական փոփոխութիւն և յեղաշրջում—ապա ուրեմն ոչ միայն մահմեդական պետութիւնները կը կորցնեն իրենց անկախութիւնը, այլև, մահմեդական տարրերի կատարեալ ոչնչացումը կը դառնայ միմիայն ժամանակի հարց...» («Թըրքական ժողովածու» եր. 104)։

Տեսնենք այժմ թէ ինչու է Շախթախթինսկին այդպիսի ահազանգ հնչեցնում մահմեդական աշխարհին ի լուր և ի՞նչ պատճառներ ունի այդպէս անելու։

Այդ մասին է, որ պիտի խօսեմ ես իմ գրական յաջորդ ակնարկում։

Վ. ՓԱՓԱԶԵԱՆ

## ՔՐԴԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Ռուսական յեղափոխութիւնից յետոյ Տաճկահայաստանի գրաւուած վայրերում ապրող քիւրդերը մեծ կենդանութիւն են ցոյց տալիս։

Նախկին բռնապետութեան օրով հայկական գիւղերում տեղաւորուած, ցարական պաշտօնեաների ձեռքով զինուած այդ աւազակաբարոյ և անզուսպ ցեղը, այժմ յարմար ժամանակն է գըտել թիկունքում արշաւանքներ գործելու զօրքի և խաղաղ ազգաբնակութեան վրայ։

Իգդիրից Վան տանող ճանապարհը աւազակ քրդերի վոհմակներով լեցուն է, որոնք այս կամ այն ժայռի տակ գայլի աչքերով սպասում են որսի, մի խաղաղ անցորդի, որպէս զի վրայ թափուեն և քամեն խեղճի արիւնը։

Պարսկաստանի սահմանագլխում դարձեալ ռուս նախկին կառավարութիւնից «հովանաւորուած» աւազակները խլրտում են և անպատիժ կոտորածներ սարքում։

Քիւրդերը ոչ միայն յարձակւում են հայի վրայ, այլև ռուսական զօրքերի, պաշարակիր սայլերի և պետական պաշտօնեաների վրայ։

Կարծես կազմակերպուած է մի ներքին դաւադրական շարժում, որպէս զի ներկայ ալեկոծ դրութիւնից օգտուելով՝ ճանապարհը բաց լինի սահմանի վրայ պատրաստ սպասող թիւրքական բանակներին։

Ամեն օր նորանոր լուրեր են գալիս հաստատելու այդ համոզումը։ Երևանի «Աշխատանք»-ի երեսները լցուած են քրդական գազանութիւնների և կողոպուտների նկարագրութիւններով։ Թըրքական եաթաղանից ճողոպրած խեղճ հայը, որ ապաւինել է ռուսական մեծահոգութեան, նրա քթի տակ զուր տեղ մորթոտւում ու արիւնաքամ է լինում...։

Վերջապէս էլ բաժակը լեցուել է, մարդկային ոչ մի խիղճ, ոչ մի օրէնք չի կարող թոյլ տալ այդ սանձարձակ և անպատիժ արարքին։ Նոր կառավարութիւնը պէտք է խիստ միջոցներ ձեռք առնի գազաններին զսպելու համար։ Հայերն էլ պէտք է օգնեն կառավարութեան՝ մաքրելու ոճրագործների բոյնը։

Յանուն աշխատաւոր ժողովրդի և յանուն արիւնքամ եղած հայ ժողովրդի վերջին բեկորների պահպանութեան, պէտք է ըշտապել որչափ կարելի է շուտ վերջ դնել քրդական շարժման.

## ԱԽԼԱԹԻ ԿՈՏՈՐԱԾԸ

(ԹԵՂՈՒՏ)

Ախլաթի գաւառից 8 վերստ դէպի հիւսիս-արևմուտք ընդարձակ դաշտի վրայ շինուած է Թեղուտ գիւղը, որ նախքան պատերազմը ունէր 700 տուն հայ բնակիչ։ Իր շրջանում ամենահարուստ ըլլալուն համար աչքի կը զարնուէր թէ հասարակ քիւրդերի և թէ քիւրդ ցեղապետների կողմից, որոնք անհամբեր սպասում էին յարմար առիթի կոտորելու հայերին և տիրելու նրանց հարուստ օջախներին։ Վայրագների նպատակը կատարուեց շատ շուտով։

1916 թուի ապրիլ 30-ի առաւօտեան՝ Բաղնոցից, Մանազկերտից, Բուլանըղից և այլն գաւառներից գաղթող քիւրդերն ու թիւրքերը պաշարում են գիւղը: Գիւղի երիտասարդները նախապէս փակել էին Նեմրուտ (Ներրովթ) լեռը, որը հեռու է Թեղուտից 4—5 վերստ: Գիւղի մէջ մնում են կանայք և 1—10 տարեկան երեխաներ և 70—80 տարեկան կաղ ու կոյր պառաւներ և ծերունիներ: Երկրորդ օր առաւօտեան ժամի 8-ին գիւղը շրջապատող քրդերը քաղցած շների նման լցւում են գիւղը և սկսում թալան ու կողոպուտ. բոլոր ջահել հարսներն ու օրիորդները մերկացնելով տանում են, և հազարներ արժող ոսկեայ և արծաթեայ զարդարանքները կողոպտում: Հենց այդ պահուն կարծես պակասը լրացնելու համար վրայ են հասնում իրենց արիւնարբու զինակիցներով Ցանթապի գաւառի քիւրդ ցեղապետները՝ քօռ Հիւսէին փաշան և Աւտըլ-Մէջիտ, որոնք մինչև այդտեղ հասնելը հարիւրաւոր հայ գիւղեր մոխրակոյտի էին վերածել, և հազարաւոր անմեղ հայի արիւն թափել:

Նրանք էլ միանում են միւսներին, ժողովրդին հաւաքում մի տեղ և գեղեցիկ հարսներին ու աղջիկներին մի կողմը տանելով, մնացեալներին շրջապատում են: Չը նայած կանանց ու երախաների լաց ու կոծին, անօրէն և անխիղճ բարբարոսները երկու ժամուայ ընթացքում կոտորում են 3,500-ից աւելի կին, երախայ և տղամարդ ու դիակներից բլուրներ կազմում:

Ընտրած գեղեցկուհիներին պահում են 4—5 օր, շատերին իսլամացնում են, իսկ մնացածներին լցնում մի տուն և այրում հազարաւոր տանջանքների ենթարկելուց յետոյ:

Թեղուտի երիտասարդները թագստարաններից տեսնում են ամեն ինչը, լսում են թշնամու հրացանների որոտը, որ մահ էր սփռում չորս կողմ, ուզեցել են ի հարկէ օգնութեան հասնել, բայց չեն կարողացել, որովհետև զէնք չեն ունեցել: Կառավարութիւնը նախապէս հաւաքելիս է եղել բոլոր զէնքերը: 10—12 օր սոված, ծարաւ թափառում են հոս-հոն և ոչ մի ճանապարհով չեն կարողանում անցնել ռուսաց զօրքի մէջ, վերջ ի վերջոյ գալիս է թիւրքական կանոնաւոր զօրքը և պաշարում Նեմրութ լեռը. ճարերնին կտրած հայերը տեսնում են որ ոչ մի տեղից իրենց օգնութիւն չըկայ, և այլ ես ազատուելը անհնարին է, անձնատուր են լինում: Այդ ժամանակ վրայ է հասնում ժանդարմներից յայտնի ոճրագործ Սէիդ-Ալին և խնդրում զօրքի հրամանատարից, որ հայերին յանձնի իրեն կոտորելու:

Նրա խնդիրը չի մերժւում: Ուրախացած այդ բանից նա հաւաքում է անձնատուր եղած հայերին և տանում Ախլաթ գաւառը: Որոշուած տեղ հասնելիս շղթայաձև կապում է մէկ մէկու և կացինով 2,200 մարդու գլխատում: Դրանից յետոյ նոյն արիւնարբուն, վերցնում է 50—60 ժանդարմներ և գնում Ս. Յովհաննէսի վանքը պաշարում, որը հեռու է Թեղուտից չորս վերստ, տեսնում է որ դիմադրողներ չկան, ներս է մտնում և բռնում ծերունի վանահօր և մի քանի ծառայողներին, սրսկում դրանց վրայ քարիւղ և այրում:

Թեղուտից ազատուել են միայն 30—40 կին ու երախայ և երեք տղամարդ, որոնք գլխատուած դիակների տակն են մնացել և չեն նկատուած թշնամու կողմից:

Թեղուտ ունեցել է 2,400 ոչխար, 4,800 գոմէշ, եզ, կով, էշ և այլն. մի քարաշէն եկեղեցի և երկու ձիթահանք. գիւղն այժմ աւերակների մի կոյտ է:

Ս. Յովհաննէսի վանքը ունեցել է 2,400 ոչխար, 20 կով, 8 գոմէշ, 22 եզ և 20 ձի, որոնք թանկարժէք իրերով հանդերձ թալանուել են թշնամու կողմից:

Յովսէփ Բարսեղեան

# ՄԵՐ ՑԱՒԵՐԻՑ

Զաքաթալա քաղաքը կարելի է վստահ համարել զուտ հայաբնակ քաղաք, եթէ չը հաշուենք մի քանի տասնեակ նուխեցի թուրք ընտանիքները: Մօտ հինգ հազար հայ ազգաբնակութիւնը բարեկեցիկ կեանք ունի. հայերը բացառապէս վաճառականութեամբ ու արհեստներով պարապելով՝ տասնեակ տարիների ընթացքում ստեղծել են տանելի վիճակ:

Դժբախտաբար Զաքաթալայի հայութիւնը չը նայած իր բարեկեցիկ դրութեան, հայ փախստականների և ազգային ուրիշ ծով կարիքների բաւարարման գործում չափազանց ժլատ է գտնուել և գրեթէ ոչինչ չի արել, և այն բիւրաւոր կոչերն ու յորդորները, որոնք լոյս են տեսնում ամեն օր մեր թերթերում, Զաքաթալայի հայ հարուստի կողմից մնացել են անպատասխան:

Ապրում ու մեռնում են մեր հարուստները առանց յիշելու իրենց պարտքը հանդէպ ազգի, հայրենիքի, եկեղեցու և հասարակական հաստատութիւնների:

Ահա այդպէս է մտածում ու վարւում Զաքաթալայի հայ հարուստը. դուք երբէք չէք կարդայ լրագրի էջերում, թէ այսինչ հարուստը մահուանից առաջ իր հարստութիւնից բաժին հանեց մեր վերին աստիճանի անապահով դպրոցին:

Այդպիսի բան չէ եղել և չի կարող լինել մեր աստուածապահ գաղութում: Մեր վաճառականները պարտաճանաչ ծնողներ են միայն իրենց որդւոց վերաբերմամբ, փող չեն խնայում նրանց ուսման ու կրթութեան համար:

Տասնեակ հազարներ են ծախսում, ուսում տալիս միջնակարգ և բարձրագոյն դպրոցներում իրենց զաւակներին, բայց արի տես որ նրանցից էլ մի նշանաւոր չափ օգուտ չունի տեղական հայութիւնը: Այդ երջանիկները իրենց բարձրագոյն ուսումը ստանալուց յետոյ՝ բուն են դնում մեծ քաղաքներում, իրենց ծնողաց թողած հարստութիւնը յումպէտս վատնելու և փչացնելու համար: Գիտութեան և ուսման բարձրագոյն զէնքերով զինուած այդ պարոնները էլ երբէք միտք չեն ձգում իրենց հայրենի քաղաքը, այն տգիտութիւնն ու խաւարը, որի մէջ լողում է տեղական հայութեան մեծածաւալ զանգուածը:

Ընթերցանութեան փափաքը չկայ ժողովրդի մէջ, հայկական թերթերը շատ սակաւ են ստացւում, հայ նորատի ու դեռափթիթ երիտասարդութիւնը անտեղեակ է մեր գրականութեան և հասարակական կեանքին:

Դժբախտաբար Կ. Հ. Բ. Ընկ. տեղական ճիւղը և տիկնանց կոմիտէն կարճատև կեանք ունեցան: Հայ ժողովրդի այս անմխիթար և ողբալի կացութեան հակառակ, գնահատելի են տեղիս փոքրաքանակ թիւրք հասարակութեան ջանքերը. նրանք եռանդով փարած են ազգային շինարար աշխատանքի:

Իսկ Զաքաթալայի հայութիւնը միշտ քնած է, ծանր և խոր քնով....

Հմ. Դիմաքսեան

Զաքաթալա

## Գեղարուեստ

*
* *

Հեռուից տեսայ քեզ, ու այնպէս թեթև
Օրօրւեցին իմ խոհերը մէկ-մէկ...
Էն լաւ յուշերն էլ անցուկ օրերի
Վառ ու հուր տեսքով եկան ինձ այցի...

Ինձ լուռ փարեցին մեղմիւ շոյանքով
Երազներն անուշ՝ երազ անցեալի,
Այնպէս հարազատ, այնպէս կարօտով
Գգուեցին խնձի ջերմ գորովալի…
Ու լցուեց հոգիս կարօտով անհուն
Դէպ այն քաղցրալուր նուագը սիրուն
Նուագը գիւթող իմ մատաղ կեանքի
Ու մեղմ համբոյրը գարնան թռիչանքի…
Հեռւից տեսայ քեզ ու այնպէս թեթեւ
Օրօրուեցին իմ խոհերը մէկ-մէկ..
Նորից զգացի թրթիռ ու յուզում,
Նորից ապրեցի երազն անկշտում..

ԱՍՏՂԻԿ ՈՍԿԵՐՉԵԱՆ

# ՌՈՒՍԱՀԱՅՈՑ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

I

## ԿԱՆՈՆՆԵՐ

1) Իւրաքանչիւր ռուսահայ՝ 20 տարին լրացրած՝ առանց սեռի և դաւանութեան խտրութեան, իրաւունք ունի մասնակցելու պատգամաւորների ընտրութեանը որպէս ընտրող և ընտրուող: Գարնիզոններում և առհասարակ ընտրաշրջաններում գտնուող հայ զինուորները ընտրութիւններին մասնակցում են ընդհանուր հիմունքներով:

*Ծանօթ.*— 1 Զօրամասերում և մօտաւոր թիկունքներում գտնուող հայ զինուորների ընտրութեանը մասնակցելու հարցը որոշուելուց յետոյ առանձին կը յայտարարուի:

*Ծանօթ.*— 2 Ընտրութիւններին մասնակցելու, ընտրելու և ընտրուելու իրաւունք ունեն նաև ոչ-ռուսահպատակ այն հայերը, որոնք ներկայ պատերազմից առաջ բնակութիւն են հաստատել Ռուսաստանում:

2) Պատգամաւորների ընտրութիւնը կատարւում է ընդհանուր, հաւասար, համեմատական (պրոպորցիոնալ), անմիջական և գաղտնի ձայնատուութեամբ:

3) Ռուսահայ ժողովրդի իւրաքանչիւր 10,000 հոգուց մէկ պատգամաւոր է լինելու: Ընտրական շրջաններում ընտրելի պատգամաւորների թուի մասին տես ցուցակ ընտրական շրջանների

4) Իւրաքանչիւր ընտրող կարող է ունենալ միայն մէկ ձայն: Իւրաքանչիւր ընտրող իր ընտրողական իրաւունքը կարող է գործադրել միայն մէկ ընտրողական շրջանում: Ընտրուել կարող են մարդիկ անկախ այն հանգամանքից, թէ որ ընտրական շրջանումն են բնակւում:

5) Ընտրութիւնը կատարելու կարգերը որոշուած են ստորև առաջ բերուած Ընտրական հրահանգով:

6) Ընտրութիւնները կազմակերպելու, կարգադրելու և վարելու համար հաստատւում են՝ կենտրոնական յանձնաժողով Թիֆլիսում, այլ և 11 շրջանային ընտրական յանձնաժողովներ՝ շրջանների կենդրոններում (տես Ցուցակ ընտր. շրջանների), որոնք բաղկացած են հայ քաղաքական կուսակցութիւնների անդամներից, թւով 5—7 հոգի:

*Ծանօթ.*—Ընտրական շրջանների ցուցակում իւրաքանչիւր շրջանակի դէմ նշանակուած պատգամաւորի թուերը (օրինակ Երևան քաղաք 4, Երևանի գաւառ 7, եայլն) չեն նշանակում թէ իւրաքանչիւր շրջանակ պէտք է այդքան թւով պատգամաւոր ընտրէ իր կողմից, այլ այդ թուերը բերուած են միմիայն ցոյց տալու համար, թէ ինչ հիման վրայ և ինչ տուեալներից է ստացուել ամբողջ շրջանի պատգամաւորների թիւը (40): Ուրեմն՝ 11 ընտրական շրաններից իւրաքանչիւրը կազմում է միմիայն մէկ ընտրական միութիւն, այսինքն՝ այդ շրջաններից իւրաքանչիւր մէկում ձայնատուութեան են ենթարկւում նոյն այդ ամբողջ շրջանի համար կուսակցութիւնների կողմից առաջարկուած անուանացուցակները, որոնք պարունակում են այդ շրջանի համար պահանջուող թեկնածուների թիւը, (ընտրութեան մանրամասնութիւնները տես «Հրահանգում»:

7) Կենտրոնական ընտրական յանձնաժողովը Թիֆլիսում

ա) Հսկում է ընտրութիւնների կանոնաւորութեան վրայ ամենուրեք ընդհանրապէս.

բ) Լուծում է սոյն կանոնադրութեան և ընտրական հրահանգի գործադրման առիթով ծագող տարակուսանքները ու բացատրութիւն է տալիս:

գ) Հարկաւոր հրահանգներ է տալիս շրջանային յանձնաժողովներին:

դ) Շրջանային յանձնաժողովների զեկուցագրի հիման վրայ կազմում և հրատարակում է պատգամաւոր ընտրուածների ընդհանուր ցուցակը:

8) Իւրաքանչիւր ընտրող ինքն անձամբ պէտք է տայ իր ձայնը:

9) Ընտրութիւնների անկանոնութիւնների դէմ բողոքները, հարկաւոր բացատրութիւններով հանդերձ, տրուելու են ընտրական շրջանակային յանձնաժողովներին՝ ընտրութիւնը կատարելուց յետոյ երեք օրուայ ընթացքում: Այդ բողոքները յիշեալ յանձնաժողովները կենտրոնական ընտրական յանձնաժողովի միջոցով ներկայացնում են ռուսահայոց համագումարին, որից և կախուած է պատգամաւորների ընտրութիւնների քննութիւնը, ստուգումն ու վաւերացումը: (Շարունակ.)

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է պ. Կարապետ Շիրինեանից յօգուտ «Շիրինեան» գրադարանի 150 ռուբլի:

—Պիլինկովոյից պ. Մուրադ Մխիթարեանի միջոցով պ. Յարութիւն Խաչիկեանից նուիրաբերած 300 ռ. 10 կ.:

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Յունիսի 24-ից մինչև յուլիսի 6-ը ցորեն ուղարկուած է Գանձակ 2 վագոն, Նոր-Բայազէդ՝ 2, Ալէքսանդրապոլ՝ 5, Ղամարլու՝ 3, Ղարաչինար՝ 1, Քարվանսարա՝ 2, Ղարաքիլիսա՝ 3, Երևան՝ 5, Ներքին-Ախտա՝ 2, Իգդիր՝ 2, ընդամենը 27 վագոն:

Ալիւր ուղարկուած է Վաղարշապատ 2 վագոն, Ղարաքիլիսա՝ 2, Ալէքսանդրապոլ՝ 3, Իգդիր՝ 3 և Աշտարակ՝ 2, ընդամենը 12 վագոն:

## ՆՈՒԷՐՆԵՐ «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

«ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ի հրատարակութեան համար Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է նուէր՝

պ. Կարապետ Շիրինեանից 100 ռ.

պ. Ն. Ա. Աղամեանից 100 ռ.:

# Քրօնիկօն

Ռուսահայոց համագումարի պատգամաւորների ընտրութիւնը, որ նշանակուած էր ներկայ յուլիսի 23-ին, յետաձգուել է երկու շաբաթով և կատարուելու է օգոստոսի 5-ին, կիրակի օրը։

—Համաձայն փախստականներին տեղաւորող խորհրդի տեղեկութիւնների, այս տարուայ յուլիսի 1-ին Կովկասեան զորաճակատում եղած փախստականների թիւը հետեւեալն է.—Երևանի նահանգում 126,738 հոգի, Կարսի շրջանում՝ 29,000, Բագուի քաղաքապետութեան մէջ 2300, և Թաւրիզում ու նրա շրջակայքում 7017 հոգի։ Միւս շրջաններում եղածների թիւը դեռ կարգի չի բերուած։

—Յուլիսի 1-ից, ինչպէս ամբողջ Ռուսաստանում, նոյնպէս և Թիֆլիսում բոլոր ժամացոյցների սլաքները մի ժամ առաջ քաշուեցին։

—Կիրակի, ամսիս 2-ին բացուեց Անդրկովկասեան բանկը, որ գտնւում է Լորիս Մելիքեան փողոցում, սեփական տանը։

—Ամսիս 22-ին Թիֆլիսում կատարուելու է Անդրկովկասեան տեխնիկների համագումար։

—Անդրկովկասեան առանձին Կոմիտէն որոշել է Սահմանադիր Ժողովի ընտրութեան համար Անդրկովկասը վերածել հինգ ընտրական շրջանների, այսինքն՝ 1) Քութայիսի նահանգ, Բաթումի և Սուխումի շրջան, 2) Թիֆլիսի նահանգ Զաքաթալայի շրջանի հետ, 3) Գանձակի նահանգ, 4) Բագուի և 5) Երևանի նահանգ ու Կարսի շրջան։

—Ֆրանսիայից հաղորդում են, որ յայտնի հայ գրագէտ Ա. Չօպանեանը ընտրուել է ֆրանսիական գրողների ընկերութեան անդամ։

—Մայրաքաղաքների քաղաքային ընտրութիւնների մէջ համեմատաբար աւելի շատ քուէ ստացողը եղել է ս.-յ. կուսակցութիւնը։

—Օդեսայում վերջերս բացուած «հայ ժողովրդական ակումբ» անունով ընթերցարանին խմբագրութիւնս տրամադրեց մի օրինակ «Համբաւաբեր»։

—Սամարղանդում կազմուել է հայ օրիորդաց միութիւն, որ պիտի ձեռնարկի դասախօսութիւններ, պիտի բանայ գրադարան-ընթերցարան, հայ լեզուի ու գրականութեան տարածման համար։

—Ծովային և զինուորական մինիստր Ա. Ֆ. Կերենսկին ուղարկել է կովկասեան զօրքի և զինուորական պատգամաւորների երկրային խորհրդի անունով մի հեռագիր-դեկլարացիա, որի մէջ Ախալցխայում զինուորական բժիշկ Մոլչանովի սպանման առիթով դիմում է տեղական զօրքին մի ջերմ կոչով՝ հեռու մնալ այդպիսի հակայեղափոխական գործողութիւնից, որ խայտառակում է զօրքին և կործանում յեղափոխութեան գործը և նրա ձեռք բերած ազատութիւնը։ Մինիստրը միաժամանակ առաջարկում է քննել այդ գործը և մեղաւորներին դատարանին յանձնել օրէնքի ամենայն խստութեամբ պատժելու։

—Շուտով Թիֆլիս է գալու Վոլինի գնդի նուագախումբը, որը Ռուսաստանի գլխաւոր քաղաքներում կազմակերպում է համերգ-միթինգներ՝ ազատութեան փոխառութեան պրոպագանդի համար։ Այդ գունդը առաջինն է եղել, որ պարզել է Ռուսաստանի ազատութեան դրօշը։ Նուագախումբը բաղկացած է 60 հոգուց, ղեկավարում ի Շտէյման։ Խմբի մէջ կան հերոս-զինուորներ։ Յիշեալ խմբի համերգի ժամանակ Մոսկուայում ազատ փոխառութեանը բաժանորդագրուել են չորս և կէս միլիոն ռուբլի, Օդեսայում չորս և կէս միլ., Խարկովում եօթ և կէս միլ., Կիեւում՝ չորս միլ., Եկատերինոսլաւում՝ երկու միլ., Կովկասեան զանազան մասերում՝ չորս միլիոն։

—Երևան քաղաքի կոմենդանտ է նշանակուել պոդպորուչիկ Ա. Շահխաթունին, որ միաժամանակ ներկայացուցիչ է նաև զին. պատգամաւորների երկրային խորհրդի յեղափոխական կոնտրոլի ամբողջ Երևանի նահանգի, բացի Ալէքսանդրապոլի գաւառից։

—Պետրոգրադից հաղորդում են, որ տեղական հայկական գաղութի անդամների ժողովում վճռուել է փոխել Պետրոգրադի հայոց եկեղեցու խորհրդի կանոնադրութիւնը այն մտքով, որ այսուհետև խորհրդի գործունէութիւնը տարածուի հայ ժողովրդի բոլոր ազգային կուլտուրական կեանքի վրայ։

—Ստացանք 1) Nenry Barby—„Au paus de l'èpon vante l'Armenie martyre“։ Գրքում տեղաւորուած է Անդրանիկի, Վարդանի, Քեռիի, Համազասպի, կամաւորական խմբերի պատկերները և գաղթականների ու որբերի կեանքից մի քանի տեսարաններ. էջ 260, գինը 3,50 ֆր., Պարիզ, 1917 թ., 2) «Բազմավէպ», №1—5 Վենետիկ, 1917 թ.։

# Համաշխարհային պատերազմը

Ռուսաց արևմտեան ճակատում վերջին շաբթուայ ընթացքում ռուսների յարձակումը առաջ է տարւում։ Լոմնից գետի շրջանում ուժեղ կռիւներ են տեղի ունենում։ Ռուսները կռուով անցել են գետի հակառակ ափը. գերմանացիք ուժեղ յարձակումով փորձեցին յետ քշել մեր զօրամասերը, բայց այդ չաջողուեց նրանց։ Լեազգեան-Կլաւնի ճակատամասում մեր զօրքերը յարձակուեցին աւստրիական զօրքերի դէմ։ Այդ շրջանում յուլիս 2-ի կռւում ռուսները վերցրին 160 սպայ և 900 զինուոր։

Կալուշից հիւսիս-արևելք գերմանացիք յուլիսի 3-ի առաւօտեան դիմեցին յարձակման, որ մենք յետ մղեցինք։ Ռազմական տեսակէտով ռուս զօրքերը թողեցին Կալիշը և անցան Լոմնից գետի ձախ ափը։ Նովիցա գիւղի շրջանում ռուսների յարձակումը շարունակւում է։

Յունիսի 18-ից մինչև յուլիսի 3-ը ռուսները վերցրել են 834 սպայ, 35,000 զինուոր, 93 ծանր թնդանօթ, 403 գնդացիր, 45 ականաձիգ, 45 ռմբաձիգ և մեծ քանակութեամբ ռազմանիւթ։

Ռուսաց զինուորական մինիստր Կերենսկին ռազմաճակատումն է և ոգևորում է զինուորների յարձակողական եռանդը, իսկ Ծերեթելին թիկունքումն է աշխատում այդ ուղղութեամբ։

Կովկասեան ճակատում՝ Գիւմիշխանէից հարաւ-արևմուտք մեր զօրքերը յետ մղեցին թիւրքերի երեք յարձակումը։ Սերդեշտի և Բանայի շրջանում քրդական յարձակումները յետ են մղւում։

Ֆրանս-անգլիական ճակատում գերմանացիք յարձակողական են դիմել ամբողջ ճակատամասի վրայ։ Սերնէից արևմուտք թշնամին ուժեղ կրակի տակ դիմեց սոսկալի գրոհի և մեծ կորուստներից յետոյ տիրացաւ առաջին գծի մի քանի խրամատներին։ Շամպանի շրջանում ֆրանսացոց յարձակումները պսակւում են յաջողութեամբ, նրանք վերցրին 800 մեթր տարածութեամբ մի հողամաս և ձեռք բերին 360 գերի։ Շամպանիի կռիւը վերջացաւ գերմանացոց պարտութեամբ. ֆրանսական զօրքերը առաջանում են։

Միւս ճակատների վրայ էական փոփոխութիւն չկան։

## ԴԷՊՔԵՐԸ ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ
### ՆԵՐՔԻՆ ԳՈՐԾԵՐԻ ՄԻՆԻՍՏՐՈՒԹԵԱՆ ՀԵՌԱԳԻՐԸ ՆԱՀԱՆԳԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻՆ

*Պետրոգրադ, 5 յուլիսի.*— Ներքին գործերի մինիստրութիւնը հետեւեալ հեռագիրն ուղարկեց նահանգական կոմիսարներին.

Յուլիս 4-ի ցերեկը շրջանի զօրքերի գլխաւոր հրամանատարը հրատարակեց հետեւեալ յայտարարութիւնները. «Կատարելով Ժամ. Կառավարութեան հրամանը Պետրոգրադը մաքրելու համար այն մարդկանցից, որոնք զէնքը ձեռքին խանգարում են կարգը և վտանգ են սպառնում քաղաքացիների կեանքին և գոյքին, առաջարկում եմ մայրաքաղաքի բնակիչներին առանց ծայրայեղ անհրաժեշտութեան դուրս չգալ փողոց, փակել դռները և միջոցներ ձեռք առնել, որ անյայտ անձեր տուն չըմտնեն: Զօրամասերին առաջարկում եմ անյապաղ վերականգնել կարգը փողոցներում»: Արտիլերիայի, կազակների և հետեւակ զօրքերը սկսեցին գործել լիովին ենթարկուելով գլխաւոր հրամանատարի կարգադրութիւններին. Նրանք իրագործում են անկարգութիւնները դադարեցնելու և նրա մասնակիցներին ձերբակալելու ծրագիրը, որ տուել էր կառավարութիւնը բան., զին., և գիւղ. պատ. խորհուրդների գործադիր կոմիտէների լիակատար համաձայնութեամբ: Նկատի ունենալով, որ գաւառներում կարող են տեղի ունենալ անցքեր, որոնք աւելի մեծ անկարգութիւն կը մտցնեն երկրի տնտեսական կեանքի մէջ և կսպառնան կատարելապէս քայքայել բերքը հաւաքելու, ինչպէս և պարենաւորման ու վառելիքի բաշխման գործը և թուլացնել բանակի ռազմաճակատում թշնամու յամառութիւնը կոտրելու համար թափած հերոսական ջանքերը, Ներքին գործերի մինիստրութիւնն առաջարկում է ձեզ անյապաղ հասարակական բոլոր կազմակերպութիւնների ներկայացուցիչների հետ միասին ամենավճռական միջոցներ ձեռք առնել թոյլ չտալու և դադարեցնելու համար յեղափոխութեան գործը խայտառակող փոքրամասնութեան այդպիսի հնարաւոր գործողութիւնները: Բան., զին. և գիւղ. պատ. համառուսական խորհուրդները իրենց կոչի մէջ ասում են. «Ռազմաճակատում յեղափոխութեան նուաճումները պաշտպանող մեր յեղափոխական բանակի վերաբերմամբ այդ արարքները հաւասարազօր են դաւաճանութեան: Վիլհելմի զօրքերի դէմ կռուող յեղափոխական բանակի մէջքին դանակ է խրում նա, ով թիկունքում ոտնձգութիւն է անում դեմոկրատիայի լիազօր մարմինների կամքին դէմ և դրանով ներքին կռիւներ է ձգում նրա շարքերի մէջ»: Յայտնելով վերոյիշեալի մասին, ներքին գործերի մինիստրութիւնը առաջարկում է անյապաղ ծանուցել ամբողջ բնակչութեանը տեղի ունեցած անցքերի և կառավարութեան կողմից ձեռք առնուող միջոցների մասին և շտապ հաղորդել նահանգի դրութեան և ձեռք առած կարգադրութիւնների մասին»:

## ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

*Պատ. խմբ. «Համբաւաբեր» շաբաթաթերթի*

Կ. Հ. Բ. Ընկ. Մեծ-Ղարաքիլիսայի ճիւղի վարչութիւնը իր շնորհակալութիւնն է յայտնում պ. Ն. Յակոբեանին, ի յիշատակ իր հանգուցեալ կնոջ բրած յիսուն ռուբլի նուիրաբերութեան համար:

Նախագահ վարչ.՝ բժ. Ա. Վ.ԱՐԴԱՆԵԱՆ
Անդամ-քարտուղար՝ Յ. ԽԱՉԱՏՐԵԱՆ

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը յայտնում է ի գիտութիւն և ի զգուշութիւն հայ դպրոցական հաստատութիւնների վարժուհիներ՝ օր. Ա. Թառայեանի և օր. Ա. Խաչատրեանի անվայել վարմունքի մասին, որպիսին պատիւ չի բերում ուսուցչութեան սուրբ կոչմանը: Այդ վարժուհիները նշանակուած լինելով Բախուրէլ գիւղի վարժուհի, տարուայ կէսին, ռոճիկները ստանալուն պէս, առանց ոեւէ մէկին մի բան յայտնելու, թողնում են դպրոցը և աշակերտ-աշակերտուհիներին երեսի վրայ հեռանում են յայտնի չէ թէ ուր:

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

Կալրիչ քաղաքում գտնւում են հետեւեալ թիւրքահայ գերիները, որոնց անունները տալիս ենք ի գիտութիւն իրենց բարեկամների:

1.— Պառուչիկ Արտաշէս Ամիրեան (Վան—Շատախ), 2.— Պոր. Գառնիկ Նաւասարդեան (Բօլուցի), 3.— Պոդպօր. Մկրտիչ Խանճեան (Վան), 4.— Պոդպօր. Աստուր Աշըքեան (Ադաբազար), 5.— Պրապորշ. Պետրոս Չէօկուրցեան (Անկարա):



Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ

Հրատ. Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1

